Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿԿ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ԱՊՐԻԼ 7 1963



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78:*

## СОДЕРЖАНИЕ






Адрес редакции: Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.




# ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

## (Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 93-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

1963 թվականի ապրիլի 22-ին, լրանում է միջազգային պրոլետարիատի հանճարեղ առաջնորդ, Մարքսի ու Էնգելսի գործի մեծ շարունակող, Սովետական Միության կոմունիստական պարտիայի ստեղծող և աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիր՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 93-րդ տարեդարձը։ Պատմական այդ նշանավոր տարեթիվը մեծ երախտագիտությամբ են նշում սովետական մարդիկ, սոցիալիստական բոլոր երկրների աշխատավորները, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը, որոնց համար թանկ ու նվիրական է Իլյիչի անունը։

Պատմությանը հայտնի են ոչ քիչ թվով պանծալի անուններ, որոնք դարերով ապրել

են ժողովուրդների հիշողության մեջ։ Սակայն Լենինի անունը անմահ է, նրա պայծառ կյանքը աշխատավորներին անձնվիրաբար ծառայելու, ժողովրդի շահերի, նրա երջանկության համար պայքարելու ոգեշունչ օրինակ է։ Լենինի անձի մեջ զարմանահրաշ կերպով միավորված էին հանճարեղ մտածողն ու քաղաքական բոցաշունչ մարտիկը, պրոլետարական ռևոլյուցիայի իմաստուն ստրատեգն ու սոցիալիզմի ճարտարապետը։ Լենինի մեջ ներդաշնակորեն ձուլվում էր այն ամենը, ինչ մեծ ու հերոսական է պրոլետարիատի մեջ՝ հզոր միտքը, անհողդողդ կամքը, անտահման ատելությունը շահագործողների նկատմամբ, ռևոլյուցիոն կրքոտությունը, վիթխարի կազմակերպչական տաղանդը։ Հողագնդի վրա չկա մի անկյուն, որտեղ չիմանան Լենինի անունը։ Ամենուրեք Լենինը դարձել է մութ ուժերի դեմ պայքարի սիմվոլը, խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի, ժողովուրդների երջանկության համար պայքարի դրոշը։

Լենինի անվան հետ կապված է մի ամբողջ դարաշրջան՝ միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, կապիտալիզմի կործանման, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։ Անհնարին է պատկերել ներկա դարաշրջանի քիչ թե շատ նշանակալից մի որևէ իրադարձություն, որը կապված չլինի Լենինի անվան և նրա ամենահաղթ ուսմունքի հետ։ Այսօրվա բազմաթիվ ու բազմապիսի երևույթների էությունը և նրանց զարգացման հեռանկարները ճիշտ ըմբռնելու համար մենք դիմում ենք Լենինի մեծ ուսմունքին, նրանում գտնում գիտականորեն խորն ու սպառիչ պատասխաններ։ Լենինի հանճարեղ ուսմունքը լուսավորում է նաև ապագան, տեսանելի դարձնում պատմական զարգացման հեռանկարները։



Լենինի մեծ ուսմունքը՝ լենինիզմը մարքսիզմի ստեղծագործական շարունակությունն ու զարգացումն է պատմական նոր պայմաններին համապատասխան։ Վ. Ի. Լենինի պատմական մեծագույն ծառայությունը մարդկությանը այն է, որ նա ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը, ճշմարտացի ու կոնկրետ պատասխաններ տվեց դարաշրջանի առաջադրած բոլոր խնդիրներին և ստեղծեց մի պարտիա՝ կոմունիստական պարտիա, որի ղեկավարությամբ իրականացվեց առաջին հաղթական սոցիալիս-

տական ռևոլյուցիան, հիմնադրվեց պատմության մեջ առաջին սոցիալիստական պետությունը, սոցիալիզմը տեսությունից անցավ կենդանի պրակտիկայի՝ Լենինը հանճարեղ խորաթափանցությամբ մշակեց մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գիտական պլան, որը հաղթականորեն իրականության է վերածվում։

Կենսագործելով սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման լենինյան պլանը, սովետական ժողովուրդը համաշխարհային-պատմական հաջողություններ ձեռք բերեց, արմատապես փոխեց մեր երկրի դեմքը։ Սովետական երկիրը արդեն թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման դարաշրջանը։ Հեռու չէ այն ժամանակը, երբ կոմունիզմի սկզբունքները անբաժան կերպով կհաստատվեն մեր կյանքում։ Պարտիայի Ծրագիրը, որն ամբողջովին տոգորված է լենինիզմի հաղթական գաղափարներով, այսօր լուսավորում է մեր ուղին դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ բարձր զարգացած նյութատեխնիկական բազայի, հզոր արտադրողական ուժերի ստեղծումը կազմում է կոմունիստական շինարարության վճռական օղակը։ Սովետական Միության



կոմունիստական պարտիան միշտ ելել և ելնում է լենինյան այդ ցուցումից։ Հենց լենինյան այդ գաղափարի կենսագործման շնորհիվ է, որ այսօր մեր երկիրը դարձել է աշխարհում առաջնակարգ արդյունաբերական տերություն և ընթանում է համաշխարհային գիտական ու տեխնիկական առաջադիմության ավանգարդում։ Այդ մասին են վկայում հետևյալ տվյալները։ 1923 թվականին Սովետական Միությունում արտադրվել է ընդամենը 615 հազար տոննա պողպատ, 11,5 միլիոն տոննա ածուխ (քարածխի վերածած), 5 միլիոն տոննայից մի փոքր ավելի նավթ, 300 հազար տոննայից պակաս ցեմենտ։ Իսկ 1962 թվականին ՍՍՌՄ-ում արդեն արտադրվել է 76,3 միլիոն տոննա պողպատ, 55,3 միլիոն տոննա չուգուն, 186 միլիոն տոննա նավթ, 518 միլիոն տոննա ածուխ, 57,3 միլիոն տոննա ցեմենտ, 59,2 միլիոն տոննա գլանվածք, 128 միլիոն տոննա երկաթի հանքաքար։ Նշանակում է, որ անցած 40 տարիների ընթացքում մեր երկրում պողպատի արտադրությունն աճել է ավելի քան 123 անգամ, նավթինը՝ 37 անգամ, ածխինը՝ 45, իսկ ցեմենտինը՝ 191 անգամ։ Եթե 1923 թվակա-

նըն մեր երկիրը ամերիկյան մակարդակից ետ էր մնում պողպատի ասպարեզում 74 անգամ, ածխի ասպարեզում՝ 52, նավթի ասպարեզում՝ 19 և ցեմենտի ասպարեզում՝ 87 անգամ, ապա այժմ արտադրության մակարդակների հարաբերակցությունը բոլորովին փոխվել է։ Արդեն 1961 թվականին Սովետական Միությունում արտադրված պողպատի ծավալը կազմում էր ԱՄՆ-ում արտադրվածի 78 տոկոսը, ածխինը՝ 118 տոկոսը, նավթինը՝ 47 տոկոսը, ցեմենտինը 94 տոկոսը։

Կոմունիստական պարտիան հետևողականորեն վարում է ծանր ինդուստրիայի հետագա զարգացման կուրս, որը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի, երկրի պաշտպանության, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման հիմքերի հիմքն է։

Հաջողությամբ իրականացվում է մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Արդյունաբերության համախառն արտադրանքը յոթնամյակի անցած չորս տարում պլանով նախատեսված 39 տոկոսի փոխարեն աճել է 45 տոկոսով։ Դա նշանակում է, որ չորս տարում պլանից դուրս արտադրվել է 28 միլիարդ ռուբլու արտադրանք։ Ապահովված է



լավ տեմպ Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ տեղի ունեցող խաղաղ տնտեսական մրցության մեջ։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի աճը անցած հինգ տարիներին մեզանում կազմեց 48 տոկոս, իսկ ԱՄՆ-ում ընդամենը ութ տոկոս։ Ներկայումս ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմում է ԱՄՆ-ի արտադրանքի մոտավորապես 63 տոկոսը՝ 1957 թվականի 47 տոկոսի համեմատությամբ։

Յոթնամյա պլանի առաջադրանքների գերակատարման շնորհիվ ՍՍՌՄ արդյունաբերական արտադրության ծավալը յոթնամյակի ընթացքում կավելանա ոչ թե 80 տոկոսով, ինչպես նախատեսված էր առաջ, այլ մոտավորապես երկու անգամ։ Արդյունաբերության վիթխարի աճի մասին է վկայում այն, որ ներկայումս մեր արդյունաբերությունը յուրաքանչյուր երեք օրում արտադրում է ավելի շատ արտադրանք, քան արտադրվել է ամբողջ 1923 թվականին։

Հաջողությամբ կենսագործվեցին մեծ Լենինի անմահ պատգամները գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ուղղությամբ։ Գյուղատնտեսության կոլեկտիվացումը գյուղի՝ դեպի սոցիալիզմ ու կո-

մունիզմ ընթանալու միակ ճիշտ ուղին է։ Սովետական ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրագործեց գյուղատնտեսության կոլեկտիվացումը և արմատապես փոխվեց գյուղի պատկերը։ Բարձր մթերատու գյուղատնտեսությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է։ Ինչպես հայտնի է, գյուղատնտեսությունը երկար ժամանակով խիստ ետ էր մնում մեր ժողովրդի պահանջմունքների մակարդակից։ Վերջին տարիների ընթացքում պարտիայի Կենտկոմը իրականացրեց մի շարք կարևորագույն միջոցառումներ, որոնք զգալի չափով փոխեցին գյուղատնտեսության վիճակը, ապահովեցին նրա որոշակի վերելքը։ Փոխվեց ցանքատարածությունների կառուցվածքը, զգալիորեն ընդլայնվեցին եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, ոլոռի ցանքերը։ Չնայած երկրի մի շարք գյուղատնտեսական շրջաններում կլիմայական անբարենպաստ պայմաններին, հացահատիկի համախառն բերքը անցյալ տարի կազմեց ինը միլիարդ փութ։ Աճեց նաև անասնապահական մթերքների արտադրությունը, ավելացան գյուղատնտեսական մթերքների պետական գնումները։ 1962 թվականին, 1953 թվակա-



նի համեմատությամբ, հացահատիկի գնումներն աճել են երկու անգամ, անասունների ու թռչունների գնումները՝ ավելի քան երկուս ու կես անգամ, խոզերինը գրեթե երեք անգամ։ Սակայն ժողովրդի պահանջները լրիվ բավարարելու համար դեռ շատ բան պետք է անել։ Պարտիան իրագործում է մի շարք միջոցառումներ, որպեսզի հասնի գյուղատնտեսական արտադրության հետագա է՛լ ավելի մեծ վերելքի, ապահովի նրա բոլոր ճյուղերի հետագա զարգացումը։

Արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն զարգացումը հնարավորություններ ստեղծեցին սովետական մարդկանց նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման ուղղությամբ։ Մեր պարտիան ու սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում սովետական մարդկանց նյութական բարեկեցության և նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Արագ տեմպերով աճում է մեր երկրի ազգային եկամուտը։ Վերջին տասը տարում Սովետական Միությունում ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպը կազմել է 9,2 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում՝ միայն 2,7 տոկոս։ Մեկ աշխատա-

ղի հաշվով ՍՍՌՄ աշխատավորների ռեալ եկամուտները անցած չորս տարում ավելացան 18 տոկոսով։ Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման կարևորագույն ցուցանիշն է սպառման հասարակական ֆոնդերի աճը, որոնք տրվում են բնակչությանը աշխատավարձից և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունից դուրս։ Եթե 1958 թվականին այդ ֆոնդերը կազմում էին 21,5 միլիարդ ռուբլի, ապա 1962 թվականին դրանք հասան 28,4 միլիարդ ռուբլու։

Տարեցտարի աճում է բնակչությանը լայն սպառման ապրանքների ու մթերքների վաճառքը։ Միայն վերջին չորս տարիների ընթացքում բնակչությանը վաճառվող ապրանքների քանակն աճեց գրեթե մեկ երրորդով, իսկ մսամթերքների վաճառքն աճեց 40 տոկոսով, կաթինը գրեթե՝ մեկուկես անգամ, շաքարինը՝ 40 տոկոսով, հագուստինը՝ 48 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 39 տոկոսով։

Սովետական մարդկանց նյութական բարեկեցության ու կուլտուրայի աճի, նրանց կենցաղի բարելավման մասին են վկայում նաև հետևյալ տվյալները. տասը տարի առաջ բնակչությանը վաճառվում էր տարե-



կան 70—100 հազար հեռուստացույց, իսկ վերջին չորս տարում վաճառվել է տարեկան միջին հաշվով մեկուկես միլիոն հեռուստացույց, վերջին չորս տարում վաճառվել է գրեթե 2,5 միլիոն սառնարան, ավելի քան 4,6 միլիոն լվացքի մեքենա կամ չորս անգամ շատ, քան նախորդ չորս տարում։

Անցած տարի բուռն թափով շարունակվում էր բնակարանային շինարարությունը։ Պետական միջոցների հաշվին և պետական վարկի օգնությամբ, բնակչության միջոցների հաշվին անցած տարի քաղաքներում ու բանվորական ավաններում շահագործման հանձնվեցին ավելի քան 81 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, այսինքն՝ ավելի քան 2 միլիոն նոր բարեկարգ բնակարաններ։ Միայն պետական բնակարանային շինարարության հաշվին շահագործման հանձնվեց ավելի քան 60 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածություն կամ 7 տոկոսով ավելի, քան 1961 թվականին, իսկ գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան պետական և կոլտնտեսային վարկի օգնությամբ կառուցել են մոտ 450 հազար բնակարան։ Ընդհանուր հաշվով անցյալ

տարի երկրում նոր բնակարան ստացան, ինչպես նաև իրենց բնակարանային պայմանները բարելավեցին մոտ 12 միլիոն մարդ։ Զգալի աշխատանք կատարվեց բնակելի տների գազիֆիկացման ուղղությամբ։ Սովետական բնակչության նյութական բարեկեցության բարձրացման մասին է վկայում նաև այն փաստը, որ 1963 թվականի հունվարի 1-ի դրությամբ ՍՍՌՄ բնակչության թիվը կազմեց 223 միլիոն՝ նախորդ տարվա համեմատությամբ աճելով 3,3 միլիոնով։

Մեր երկրում մեծ Լենինի անմահ գաղափարների մարմնացման վառ վկայությունն են գիտության, կուլտուրայի ու լուսավորության բնագավառներում ձեռք բերած վիթխարի նվաճումները։ Սովետական Միությունը ներկայումս ժամանակակից գիտության բազմաթիվ կարևոր ճյուղերի գծով աշխարհում ընթանում է առաջին տեղը։ Մեծ են հատկապես մեր նվաճումները տիեզերքի յուրացման բնագավառում։ Հայրենական գիտության ու տեխնիկայի զարգացման պսակն է հանդիսանում անվեհեր տիեզերագնացներ Անդրիան Նիկոլաևի և Պավել Պոպովիչի խմբային տիեզերական երկարատև թռիչքը և հաջող վերադարձը երկիր։



Մեր երկիրը ծածկվել է գիտահետազոտական և ուսումնական հաստատությունների խիտ ցանցով։ Ներկայումս 60 միլիոն մարդ կամ երկրի ամբողջ բնակչության ավելի քան քառորդը սովորում է։ Բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորում է 5,6 միլիոն մարդ։ Անցյալ տարի երկրի ժողովրդական տնտեսությունն ստացավ 770 հազար մասնագետներ, որից 319 հազարը բարձրագույն կրթությամբ։

Երկրի գիտական հիմնարկներում, բուհերում և այլ կազմակերպություններում զբաղված գիտական աշխատողների թիվը 1962 թվականի վերջին կազմեց ավելի քան 450 հազար մարդ։

Վ. Ի. Լենինը առանձնապես մեծ նշանակություն էր տալիս երկրի էլեկտրիֆիկացմանը, հռչակելով իր նշանավոր ֆորմուլան՝ կոմունիզմը սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան։ Դեռ 1920 թվականին նա հանճարեղ խորաթափանցությամբ գրում էր, որ «էլեկտրիֆիկացիան կվերածնի Ռուսաստանը։ Էլեկտրիֆիկացիան սովետական կարգի հիման վրա կստեղծի մեր երկրում կոմունիզմի հիմքերի... վերջնական հաղթանակը»։ Լենինի անմիջական նախաձեռնությամբ կազմ-

վեց էլեկտրիֆիկացման առաջին պլանը՝ հռչակավոր ԳՈԷԼՌՈ-ի պլանը, որի կենսագործմանը մեծ եռանդով ձեռնամուխ եղավ սովետական ժողովուրդը։ Մեկը մյուսի ետևից մեր երկրում կառուցվեցին հարյուրավոր մեծ ու փոքր էլեկտրակայաններ, որոնք էժան էներգիա են տալիս ժողովրդական տնտեսությանը։ 1962 թվականին մեր երկրում արդեն արտադրվեց 369 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա կամ 184 անգամ ավելի, քան 1913 թվականին։ ՍՄԿՊ Ծրագրում նախատեսված է երկրում նոր էլեկտրակայաններ կառուցելու վիթխարի պլան։ Առաջիկա քսանամյակում էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը պետք է հասցվի մոտ 3000 միլիարդ կիլովատ-ժամի։ Դա հնարավորություն կտա հիմնովին էլեկտրիֆիկացնելու երկրի ամբողջ տնտեսությունը և բավարարելու էլեկտրաէներգիայի գծով կենցաղային պահանջները։

Երկրի էլեկտրիֆիկացումը վճռական նշանակություն կունենա արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր ամե-





նակարևոր խնդիրներից մեկն է։ Լենինը կոմունիզմի վերջնական հաղթանակը ուղղակի կերպով կապում էր աշխատանքի առավել բարձր արտադրողականության ձեռք բերման հետ։ Իրագործելով մեծ Լենինի պատգամները, կոմունիստական պարտիան ու սովետական պետությունը անում են ամեն ինչ երկրի արտադրողական ուժերի անընդհատ կատարելագործման, տեխնիկական պրոգրեսի հիման վրա աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման համար։ Մեր երկիրը աշխարհում առաջին տեղն է բռնում աշխատանքի արտադրողականության աճման տեմպերով։ 1962 թվականին արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը, 1961 թվականի համեմատությամբ, բարձրացավ 6 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվեց արդյունաբերական արտադրանքի աճի մոտ երկու երրորդը։ Խոշոր հաջողություններ ձեռք բերվեցին արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Պարտիան հաստատակամորեն վարում է երկրի ծանր արդյունաբերությունն առավել արագ տեմպերով զարգացնելու լե-

նինյան կուրսը, որը մշակված է ՍՄԿՊ Ծրագրում։

Վլադիմիր Իլյիչ Լենինը ժողովուրդների բարեկամության մեծ դրոշակակիրն էր, բոցաշունչ ինտերնացիոնալիստ։ Նա մշակեց ազգային հարցի մարքսիստական տեսությունը և ռևոլյուցիոն ծրագիրը, որը հետևողականորեն կիրառվում է կոմունիստական պարտիայի ու սովետական պետության կողմից։ Պարտիան ստեղծեց ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը,- որը դարձել է մեր սոցիալիստական պետության ուժի և հզորության աղբյուրը, մեր բոլոր հաջողությունների գրավականը։

Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ, իսկական վերածնունդ ապրեցին մեր երկրի բոլոր ժողովուրդները։ Պարտիան անում է ամեն ինչ, որպեսզի այսուհետև է՛լ ավելի ամրապնդվի մեր երկրի ժողովուրդների եղբայրական ընտանիքը։ ՍՄԿՊ Ծրագիրը նշում է այն ուղիները, որոնցով այսուհետև պետք է զարգանան ազգային հարաբերությունները մեր երկրում աստիճանաբար կոմունիզմի անցման շրջանում։

ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում ծաղկում ու բարգավաճում է իս-



կական վերածնունդ ապրած հայ ժողովուրդը։ Ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ծայրամաս Հայաստանը, որը դաշնակցության անփառունակ տիրապետության տարիներին դարձել էր մահվան ու որբերի երկիր, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ ազատագրվեց տեղական և օտարերկրյա հարստահարողների լծից, ձեռք բերեց սոցիալական ու ազգային իսկական ազատություն։ Մեծ Լենինը Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելու կապակցությամբ ջերմորեն ողջունեց հայ ժողովրդին և մշտական հայրական հոգատարություն ցուցաբերեց նրա վերածնման նըկատմամբ։ Կարճ ժամանակում Հայաստանը դարձավ առաջավոր ինդուստրիայի, զարգացած գյուղատնտեսության և բարձր կուլտուրայի երկիր։ Ներկայումս Սովետական Հայաստանի արդյունաբերական արտադրանքի ծավալը 70 անգամից ավելի գերազանցում է 1913 թվականի մակարդակը։ Ստեղծվել են բազմաթիվ նոր կոմբինատներ ու գործարաններ, արդյունաբերության նոր ճյուղեր, որպիսիք մինչսովետական Հայաստանում բոլորովին չկային։ Միայն յոթնամյակի չորս տարում կառուցվել ու շահագործման է հանձնվել 169 արդյունաբերա-

կան ձեռնարկություն ու խոշոր ցեխ, այդ թվում Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայանները, Կիրովականի ջերմաէլեկտրակայանը, Լուսավանի ներտաշ հաստոցների, Կիրովականի գերճշգրիտ հաստոցների և արհեստական մետաքսաթելի, Արզնու տեխնիկական ճշգրիտ քարերի, Երևանի երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յուրացրեց արտադրանքի ավելի քան 400 նոր տեսակներ։ Աշխատանքի արտադրողականությունը վերջին չորս տարում բարձրացավ 20,1 տոկոսով։

Արագ թափով զարգանում է ռեսպուբլիկայի կապիտալ շինարարությունը։ Միայն վերջին չորս տարում ժողովրդական տնտեսության մեջ գրեթե այնքան կապիտալ ներդրումներ են կատարվել, որքան 36 տարում, այսինքն 1921—1956 թվականներին։ Սովետական իշխանության տարիներին հիմնովին փոխվեց մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության պատկերը։ Առանձնապես հաջողությունները նկատելի են վերջին տարիներին։ Միայն վերջին չորս տարում խաղողի այգիների տարածությունները ռեսպուբլիկայում ավելացան 43 տոկոսով, պտղատու այգիներինը՝ 36 տոկոսով։ Աճեց հացահատիկի, շաքարի



ճակնդեղի, ծխախոտի, խաղողի, բանջարեղենի, պտուղների և այլ կուլտուրաների արտադրությունը։ Որոշ չափով ավելացել է նաև կովերի, ոչխարների և մյուս անասունների գլխաքանակը, ինչպես նաև անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը։

Սովետական Հայաստանը մեծ նվաճումներ է ձեռք բերել գիտության, կուլտուրայի և արվեստի զարգացման բնագավառում։ Անընդհատ ծաղկում է մեր ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Ռեսպուբլիկան ծածկվել է հանրակրթական դպրոցների խիտ ցանցով։ Ներկայումս 457 հազար մարդ կամ ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության 23 տոկոսը սովորում է տարբեր ուսումնական հաստատություններում։ Բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում է ավելի քան 46 հազար մարդ, որից 25,9 հազարը՝ բուհերում։

Տարեցտարի բարելավվում է ռեսպուբլիկայի աշխատավորների նյութական բարեկեցությունը։ Միայն վերջին երեք տարում ազգային եկամուտը աճեց 30,2 տոկոսով։ Առանձնապես մեծ թափ է ստացել բնակարանային շինարարությունը։ 1962 թվականին

պետական և կոոպերատիվ միջոցների հաշվին, ինչպես նաև բնակչության խնայողությունների հաշվին, պետական վարկի օգնությամբ քաղաքներում ու բանվորական ավաններում շահագործման հանձնվեցին 787 հազար քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ կամ ավելի քան 16,3 հազար բնակարան։ Անհրաժեշտ է նշել, որ միայն պետական ու կոոպերատիվ միջոցների հաշվին շահագործման հանձնվեց 556 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն կամ 85 հազար քառակուսի մետրով ավելի, քան 1961 թվականին։

Ռեսպուբլիկայի աշխատավորների կենսամակարդակի բարձրացման շնորհիվ, արագ աճում է բնակչությունը։ Եթե 1959 թվականին ռեսպուբլիկայի բնակչությունը կազմում էր 1 միլիոն 764 հազար, ապա 1962 թվականի վերջին տվյալներով այն հասել է 2 միլիոն 21 հազարի կամ աճել է մոտավորապես 15 տոկոսով։

Լենինիզմը ինտերնացիոնալ մեծ ուսմունք է, որը վիթխարի ազդեցություն է գործում համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա։ Լենինը նշում էր, որ Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան բոլոր երկրների ժողովուրդների



առջև կկանգնի որպես կենդանի օրինակ, որի պրոպագանդիստական, ռևոլյուցիոնացնող ներգործությունը հսկայական կլինի։ Հասարակական զարգացման վերջին տասնամյակների փորձը անհերքելիորեն հաստատում է լենինիզմի գաղափարների կենսահաստատ ուժը։ Լենինիզմի դրոշով Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում ներկայումս հաղթականորեն կառուցվում է սոցիալիզմ։ Ավելի քան մեկ միլիարդ մարդ միավորող սոցիալիստական համաշխարհային սիստեմը ներկայումս տալիս է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ 37 տոկոսը։

Համաշխարհային սոցիալիստական լագերի ստեղծումն ու ամրապնդումը լենինիզմի գաղափարների մեծ հաղթանակն է, նրա վերջնական հաղթանակի փայլուն վկայությունը։ Նա դարձել է մեր ժամանակներում հասարակական զարգացման վճռական ուժը։ Ներկայումս մեր դարաշրջանի գլխավոր բովանդակությունը և ուղղությունը որոշում է ոչ թե իմպերիալիզմը, այլ սոցիալիստական սիստեմը։ Իմպերիալիզմը անզոր է կանգնեցնելու լենինիզմի գաղափարների հաղթական երթը։ Ապագան պատկանում է լենինիզմին։

Վ. Ի. Լենինը գաղութային ու կախյալ երկրների ճնշված ժողովուրդների մեծ բարեկամն էր, նրանց ազգային ազատագրական պայքարի ջերմ պաշտպանը։ Նա խոր համոզվածությամբ ասում էր, որ ազգային-ազատագրական շարժումն անընդհատ կծավալվի և կդառնա համաշխարհային սոցիալիստական ռեսպուբլիկայի մեծ ռեզերվը։ Այժմ նորանոր ժողովուրդներ ձեռք են բերում ազգային անկախություն։ Ինչպես կանխատեսել էր Լենինը, մոտենում է գաղութատիրության լրիվ վերացման ժամը։

Հավատարիմ մնալով Լենինի պատգամներին, Սովետական Միության կոմունիստական պարտիան միշտ պաշտպանել ու պաշտպանում է ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը, նրանց ինքնորոշման իրավունքը։ Սովետական Միությունը համակողմանի անշահախնդիր օգնություն է ցույց տալիս ազատագրված ժողովուրդներին՝ նրանց քաղաքական ու տնտեսական անկախության ամրապնդման գործում։ Շնորհիվ դրա, մեր երկիրը վայելում է այդ ժողովուրդների մեծ հարգանքն ու համակրանքը։

Լենինը խաղաղության մեծ դրոշակակիր էր։ Նա մեր պարտիային ու ժողովրդին ա-



վանդ է թողել անդուլ կերպով պայքարել խաղաղության համար, հասնել պատերազմների իսպառ վերացման։ Սովետական իշխանության հենց առաջին փաստաթուղթը, որ ստորագրվեց Լենինի կողմից՝ Դեկրետն էր հաշտության մասին։ Լենինը սովետական իշխանության առաջին իսկ օրերին հռչակեց սոցիալ-տնտեսական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության գաղափարը, որը մինչև այժմ հանդիսացել և հանդիսանում է սովետական պետության արտաքին քաղաքականության գլխավոր սկզբունքը։ Հավատարիմ լենինյան գաղափարներին, Սովետական Միությունը և սոցիալիստական բոլոր երկրները հետևողականորեն վարում են խաղաղասիրական քաղաքականություն, ձախողելով նոր պատերազմ սանձազերծելու իմպերիալիստական ագրեսիվ շրջանների պլանները։ Ներկայումս աշխարհում ստեղծվել են ռեալ ուժեր, որոնք ընդունակ են վիժեցնելու իմպերիալիզմի ագրեսիվ դիտավորությունները։

Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը մշտապես հոգ են տանում Սովետական Միության զինված ուժերի մասին։ Սովետական բանակն ապահովված է ամենաժամանակակից զեն-

քով։ Եթե իմպերիալիստները պատերազմ սանձազերծեն, ապա մեր զինված ուժերը խորտակիչ հարված կհասցնեն թշնամուն, որպեսզի նրան ջախջախեն պատերազմի հենց առաջին իսկ օրը։

Սովետական Միությունը և սոցիալիստական երկրները բազմիցս խելացի առաջարկներ արեցին ընդհանուր ու լրիվ զինաթափման և միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու առթիվ, որոնք, սակայն չընդունվեցին արևմտյան տերությունների կողմից։ Այդ պատճառով էլ մենք հարկադրված ենք շարունակ նորացնել հին սպառազինությունը մեր հայրենիքի անվտանգությունն ապահովելու համար։ Սովետական Միության արտաքին քաղաքականությունն էլ հենվում է մեր տնտեսական և ռազմական հզորության ամուր հիմքի վրա, սոցիալիստական ամբողջ մեծ համագործակցության հզորության վրա։ Սոցիալիստական երկրները ընդհանուր վճռականություն ունեն խորտակելու ամեն մի ագրեսորի, հակահարված տալու մեր առաջընթացն արգելակող ամեն մի փորձի։

ՍՍՌՄ-ի արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը արժանանում է աշխարհի բոլոր խաղաղասեր ուժերի ջերմ հա-



մակրանքին, իրականանում են մեծ Լենինի մարգարեական խոսքերն այն մասին, թե «Մենք բոլոր հիմքերն ունենք լիակատար հաստատությամբ ու բացարձակ վստահությամբ նայելու ապագային, որը մեզ համար պատրաստում է նոր դաշնակիցներ, սոցիալիստական ռեսպուբլիկայի նոր հաղթանակներ...»։

Վ. Ի. Լենինի անմահ կերպարը, լենինիզմի ամենահաղթ գաղափարները ամբողջ

աշխարհի աշխատավոր մարդկությանը պայքարի են տանում հանուն մարդկության լուսավոր ապագայի, հանուն կոմունիզմի։ Լենինի պարտիական ու պետական ողջ գործունեության, նրա տեսական վիթխարի ժառանգության մեջ վառ կերպով դրսևորվել են նրա ստեղծած կոմունիստական պարտիայի հզոր ուժն ու իմաստուն գործերը, այն ամեն լավագույնը, վեհը, հերոսականն ու ռևոլյուցիոնը, որ կա բանվոր դասակարգի մեջ, ժողովրդի մեջ։

Լենինը կոմունիստական պարտիայի ստեղծողն է, սովետական պետության հիմնադիրը, ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության հանճարեղ առաջնորդը։ Նրա անունը ամենաթանկը, ամենահարազատն ու ամենամոտիկն է եղել աշխատավոր մարդու

համար։ Նա առաջին պետական ղեկավարն է եղել մարդկային պատմության մեջ, որն անսահմանորեն հավատում էր ժողովրդի ստեղծագործ ուժին, վստահ էր նրա հաղթանակին։ Լենինը հազարավոր թելերով կապված էր աշխատավորական մասսաների հետ, ոչ միայն սովորեցնում էր մասսաներին, այլև ինքը սովորում էր նրանցից, խորհրդակցում էր նրանց հետ։ Մեր երկրի բանվորները, բոլոր աշխատավորները բարձր էին գնահատում ժողովրդի նկատմամբ Լենինի վստահությունը և իրենք էլ իրենց հերթին անսահմանորեն հավատում և սիրում էին իրենց Իլյիչին։

Լենինի կերպարը կոմունիստական հասարակարգի մարդու իսկական տիպար է։ Նրա անձի մեջ զուգորդվում էին մեծագույն խորաթափանցությունն ու իմաստունությունը, պարզությունն ու համեստությունը, անսահման հոգատարությունն ու ուշադրությունը ընկերների, մարդկանց, երեխաների նկատմամբ, անսահման նվիրվածությունը պարտիայի, բանվոր դասակարգի գործին։ Նա ռևոլյուցիոն օրինականության կրքոտ պաշտպանն էր և խստորեն հետևում էր, որպեսզի տեղերում ճշտորեն կենսագործվեն սովետական օրենքները։ Անհատի պաշտամունքի



տարիներին անտեսվել էին սոցիալիստական օրինականության պահպանման լենինյան սկզբունքները, որի հետևանքով մեծ վնաս հասավ պարտիային ու ժողովրդին։

ՍՄԿՊ XX և XXII համագումարները խիստ կերպով դատապարտեցին Ստալինի անձի պաշտամունքի տարիներին մեր երկրում տեղ գտած օրինականության կոպիտ խախտումներն ու անհիմն բռնությունները և վերականգնվեցին բոլոր բնագավառներում կոլեկտիվ ղեկավարման լենինյան նորմաները։ Դրանով իսկ լայն հնարավորություններ ստեղծվեցին մասսաների նախաձեռնության ու ակտիվության ծավալման համար։

Վ. Ի. Լենինի անմահ գաղափարներն իրենց մարմնացումն են գտնում մեր պարտիայի և եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների գործունեության մեջ։ ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը, ելնելով Լենինի ցուցումներից, խոշոր միջոցառումներ նախատեսեց տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունը կատարելագործելու համար։ Պլենումը որոշեց և այժմ արդեն իրականացված է ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման վերակառուցում արտադրական սկզբունքով, այն ավելի հստակ դարձնելու

նպատակով։ Կարևոր նշանակություն ունի
հատկապես պետական և պարտիական
միասնական վերահսկողության սիստեմի
վերականգնումը։ Լենինը պետական և պար-
տիական վերահսկողության միացումը դի-
տում էր որպես գլխավոր գիծը վերահսկո-
ղության օրգանների և ամբողջ սոցիալիս-
տական պետության զարգացման մեջ։ Պար-
տիայի Կենտկոմի նոյեմբերյան պլենումի
որոշումներին համապատասխան, ստեղծվել
է պարտիական-պետական վերահսկողու-
թյան միասնական կոմիտե՝ իր տեղական
օրգաններով, որոնց գործունեության մեջ
կարևոր տեղ է գրավելու հասարակայնու-
թյան առավել լայն ներգրավումը։

Պարտիայի Կենտկոմի նոյեմբերյան պլե-
նումի որոշումները լայն ասպարեզ են բա-
ցում աշխատավորական մասսաների, հա-
սարակական բոլոր կազմակերպությունների
նախաձեռնության և ինքնագործունեության
համար, նրանց ստեղծագործական ակտի-
վության զարգացման, կոմունիզմի հաղթա-
նակի պայքարում նոր հաջողություններ ձեռք
բերելու համար։ Այդ որոշումների մեջ
դրսևորվում է լենինյան ոգին, իրենց մարմ-
նացումն են գտնում Լենինի անմահ գաղա-



փարները՝ սոցիալիզմի ու կոմունիզմի հաղ-
թանակի մասին։

Լենինիզմի գաղափարները պատմական
հաղթանակներ են ձեռք բերել միջազգային
կոմունիստական ու բանվորական շարժման
մեջ։ Նրանք միավորում են բոլոր երկրների
պրոլետարների ավանգարդին ու առաջնոր-
դին, կոմունիստական ու բանվորական պար-
տիաներին։ Միջազգային բանվորական շար-
ժումը ներկայումս նոր աստիճանի է բարձ-
րացել։ Ուժեղացել է նրա թափը, աճել է
նրա կազմակերպվածությունը։ Կոմունիս-
տական ու բանվորական պարտիաները
դարձել են մեր ժամանակի ամենաազդեցիկ
քաղաքական ուժը։ Բանվոր դասակարգը ա-
վելի հաճախ է անցնում հարձակման մոնո-
պոլիստական կապիտալի վրա։ Իր պատմա-
կան միսիան կատարելու գլխավոր պայ-
մանը բանվոր դասակարգի համար հանդի-
սանում է կոմունիստական շարժման մարք-
սիստական-լենինյան միասնությունը։ Միաս-
նությունը և համախմբվածությունը բազմա-
պատկում են կոմունիստական և բանվորա-
կան շարժման ուժերը, ապահովում են խա-
ղաղության և սոցիալիզմի մեծ գործի հաղ-
թանակը։ Սովետական Միության կոմունիս-
տական պարտիան արել է և անում է ամեն

ինչ, որպեսզի ամրապնդի և համախմբի բանվոր դասակարգին, ամբողջ աշխարհի աշխատավորությանը, միջազգային կոմունիստական շարժումը՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ դրոշի ներքո։

Կյանքը ամեն օր նորանոր հաղթանակներ է բերում լենինիզմին։ Լենինի դրոշի ներքո համախմբվում են միլիոնավոր մարդիկ աշխարհի բոլոր անկյուններում։ Լենինի գաղափարները վառ փարոսի նման լուսավորում են ժողովուրդների առաջընթաց ուղին։

Մեծ Լենինի կերպարը ապրում է և հավերժ կապրի մեր պարտիայի փառապանծ գործերում, կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի նորանոր հաջողություններում։ Լենինն ապրում է սոցիալիստական երկրների աշխատավորների սխրանքներում, եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների հերոսական գործերում, խաղաղության ու սոցիալիզմի համար մղվող համաշխարհային հզոր շարժման մեջ։

Լենինի անմահ անունը, նրա մեծ գործը և ամենահաղթ ուսմունքը կապրեն դարեր ու հազարամյակներ։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՍՏՈՒԳԱՏԵՍԸ

Արևածագից էլ դեռ առաջ, երբ միլիոնավոր մարդիկ շտապում են գործարաններն ու ֆաբրիկաները, շինարարական հրապարակներն ու հիմնարկները, ուսումնական ու գիտական հաստատությունները, հազիվ թե գտնվի մի գրագետ մարդ, որ ամենափոքրիկ իսկ հնարավորությունը չօգտագործի առաջին հերթին օրվա թերթերն ու ամսագրերը ձեռք բերելու համար, որոնց միջոցով նա ծանոթանում է աշխարհի, իր մեծ հայրենիքի, ռեսպուբլիկայի, իր քաղաքի կամ շրջանի նորություններին, կարևոր իրադարձություններին, լսում հարազատ պարտիայի և կառավարության խոսքը, իմանում իսկական ճըշմարտությունը ժամանակի հրատապ հարցերի մասին, հաղորդակից լինում մարդկության ուրախություններին, պայքարին և հոգսերին։

Սովետական մամուլը աշխարհի ամենաճշմարտացի և ամենադեմոկրատական մա-

մուլն է, այդ պատճառով էլ նա մեծ մասսայականություն է վայելում ոչ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս՝ ողջ առաջադեմ մարդկության մեջ, աշխատավոր ժողովրդի մեջ։

Պատահական չէ, որ մայիսի 5-ը՝ սովետական մամուլի մարտական ստուգատեսի օրը, որպես համաժողովրդական տոն նշվում է ոչ միայն մեր երկրի բազմամիլիոն աշխատավորների կողմից, այլև ամբողջ աշխարհի պրոլետարիատի կողմից։

1912 թվականի մայիսի 5-ին, մեծ Լենինի նախաձեռնությամբ և ղեկավարությամբ լույս տեսավ սովետական մամուլի դրոշակակիրը՝ «Պրավդա» թերթի առաջին համարը, որը խոշոր իրադարձություն էր մեր երկրի ռևոլյուցիոն շարժման պատմության մեջ։

«Պրավդա»-ի ստեղծումը նախապատրաստված էր լենինյան պարտիայի ռևոլյուցիոն պայքարի ամբողջ պատմությամբ, բոլշևիկյան մամուլի նախորդ օրգանների փորձով՝ սկսած «Իսկրա»-յից։ Դեռ «Իսկրա»-ի ստեղծման նախօրյակին Վ. Ի. Լենինը գրում էր, որ թերթը ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ է, կոլեկտիվ ագիտատոր, այլև կոլեկտիվ կազմակերպիչ։

Բոլշևիկյան մամուլը իր գործունեության



հիմքում դնելով լենինյան այս դրույթը, կարողացել է անգնահատելի դեր կատարել աշխատավորների մարքսիստական դաստիարակության և ռևոլյուցիոն պայքարի համար նրանց մոբիլիզացնելու ուղղությամբ։

«Պրավդա»-ն իր մարտականությամբ, իր հիանալի լենինյան տրադիցիաներով, իսկական ժողովրդականությամբ և մասսայականությամբ վայելում էր բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության սերն ու հարգանքը։ Դրա փայլուն ապացույցը կարող են լինել այն հանգանակությունները, որ բանվորներն ու չքավոր գյուղացիները նախառևոլյուցիոն շրջանում հավաքում էին իրենց սիրելի թերթի հրատարակության համար։ «Պրավդա»-ն հանդիսանում էր աշխատավոր ժողովրդի ռևոլյուցիոն տրամադրությունների, նրանց շահերի արտահայտիչը։ Դժվար ու բարդ է եղել «Պրավդա»-ի ուղին միապետական ռեժիմի պայմաններում։ «Պրավդա»-ի գոյության միայն առաջին երկու տարվա ընթացքում ցարական կառավարությունը ավելի քան 190 ռեպրեսիվ ակտեր է ձեռնարկել նրա դեմ՝ բռնագրավվել են համարները, տուգանքներ են նշանակվել, ձերբակալվել են խմբագրության աշխատողները։ Թերթը 8 անգամ փակվել է իշխանու-

թյունների կողմից, բայց ամեն անգամ լույս աշխարհ է եկել նոր անունների տակ. «Ռաբոչայա պրավդա», «Սեվերնայա պրավդա», «Պրավդա տրուդա», «Զա պրավդու», «Պրոլետարսկայա պրավդա», «Պուտ պրավդի», «Ռաբոչիյ», «Տրուդովայա պրավդա»։

Ո՛չ ցարական սևհարյուրյականների ռեպրեսիաները, ո՛չ մենշևիկների և էսեռների դավաճանությունները չկարողացան տատանել «Պրավդա»-յին լենինյան գծից։ «Պրավդա»-ն անշեղորեն քայլում էր սոցիալիստական ռևոլյուցիայի ճանապարհով, իր հետևից տանելով մեր երկրի բազմամիլիոն ճնշված ժողովուրդներին։

Ահա թե ինչու մասսաների պահանջով «Պրավդա»-յի առաջին համարի լույս ընծայման օրը հայտարարվեց որպես բանվորական մամուլի օր։

«Պրավդա»-ն իր մարտականությամբ ու սկզբունքայնությամբ, ժողովրդին ծառայելու հաստատակամությամբ, լենինյան գաղափարներին անսահման նվիրվածությամբ, կոմունիզմի կառուցման համար պայքարելու վճռականությամբ օրինակ է հանդիսանում ամբողջ աշխարհի բանվորական ու դեմոկրատական մամուլին։ Դրա լավագույն վկայություններից են անցյալ տարի «Պրավ-



դա»-յի 50-ամյա հոբելյանի համաժողովրդական տոնակատարությունը և Մոսկվայում կայացած հոբելյանական հանդիսավոր նիստում եղբայրական կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների ջերմ ելույթները։

Վ. Ի. Լենինը ավելի քան կես դար առաջ «Պրավդա»-ն կոչեց այն գարնան առաջին ծիծեռնակը, երբ ամբողջ Ռուսաստանը կըծածկվի բանվորական թերթեր ունեցող բանվորական կազմակերպությունների ցանցով։ Պրոլետարիատի մեծ առաջնորդի մարգարեական խոսքերը այժմ իրականացված են։ Սովետական մեծ երկիրը այժմ ծածկված է բանվորական կազմակերպությունների և նրանց թերթերի խիտ ցանցով։ Եթե իր գոյության առաջին տարիներին «Պրավդա»-ն լույս էր տեսնում 40 հազար օրինակ տիրաժով, ապա այժմ նա աշխարհի ամենամեծ տիրաժ ունեցող թերթն է։ Նրա տիրաժը հասնում է մոտ 6,5 միլիոն օրինակի։

«Պրավդա»-յի մարտական, ռևոլյուցիոն տրադիցիաներով աճել ու զարգացել է սովետական բազմալեզու և բազմահազարանոց մամուլը։ Այժմ Սովետական Միությունում հրատարակվում են մոտ 10 հազար թերթ 16 միլիարդ օրինակ տարեկան տիրա-

ժով և 4 հազար ամսագիր ու հանդես՝ 875 միլիոն օրինակ տիրաժով։ Միայն վերջին մեկ տարում հրատարակված է ավելի քան 1 միլիարդ 100 միլիոն օրինակ գիրք։ Մեր երկիրը գրքերի հրատարակության քանակով աշխարհում գրավում է առաջին տեղը։

Իրագործելով լենինյան ազգային քաղաքականությունը կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը հոգ են տանում բոլոր ազգերի և հատկապես նախկինում հետամնաց ծայրամասային ժողովուրդների կուլտուրայի զարգացման մասին։ Այժմ մեր երկրում չկա մի ազգ կամ ժողովուրդ, որ չունենա իր գիրն ու գրականությունը, իր լեզվով հրատարակվող ազգային թերթերն ու ամսագրերը։

Մեծ հաջողությունների է հասել մեր ռեսպուբլիկան։ Հայ ժողովուրդը ունի դարավոր կուլտուրա, գիր ու գրականություն։ Սակայն հայտնի է, թե որքան աննշան էր նախառևոլյուցիոն Հայաստանում հրատարակվող գրքերի ու թերթերի քանակը և որքան խղճուկ նրանց տիրաժը։

Այժմ մեր ռեսպուբլիկայում հրատարակվում են 10 ռեսպուբլիկական թերթեր՝ մոտ 8 միլիոն օրինակ տարեկան տիրաժով, 16 քաղաքային, շրջանային և միջշրջանային ու



մոտ 40 բազմատիրաժ թերթեր՝ 24 միլիոն օրինակ ընդհանուր տարեկան տիրաժով, 17 ռեսպուբլիկական ամսագիր՝ 17 միլիոն օրինակ տարեկան տիրաժով և 20-ից ավելի զանազան պարբերականներ։ Հայաստանում լույս են ընծայվում թերթեր ու գրքեր ոչ միայն ազգային լեզվով, այլև ռուսերեն, ադըրբեջաներեն, քրդերեն։

Տարեցտարի ընդլայնվում է մամուլի բաժանորդների թիվը։ Բավական է բերել մի օրինակ. եթե անցյալ տարի մեր ռեսպուբլիկայում բնակչության յուրաքանչյուր 1.000 մարդուն ընկնող թերթերի ու ամսագրերի թիվը կազմում էր 388 օրինակ, ապա այս տարի կազմում է 421 օրինակ։ Դա փայլուն կերպով ցույց է տալիս, թե որքան մեծ է մասսաների հետաքրքրությունը դեպի մամուլը։

Արագ թափով զարգանում են ռադիոն և հեռուստատեսությունը։ Այժմ բոլոր ռեսպուբլիկաները ունեն իրենց հեռուստատեսային կենտրոնները։ Մեր երկրում ռադիոհաղորդումները տրվում են ՍՍՌՄ ժողովուրդների 64 լեզուներով և աշխարհի ժողովուրդների 40 լեզուներով։

Միայն Երևանից ռադիոհաղորդումներ են տրվում 5 լեզուներով։ Ներկայումս Հայաստանի գրեթե բոլոր քաղաքներն ու գյուղերը

ռադիոֆիկացված են։ 1962 թվականին մեր ռեսպուբլիկայում ռադիոընդունիչների քանակը կազմում էր 158.000 հատ, իսկ հեռուստացույցներինը՝ 60.000 հատ։ Այժմ Երևանի հեռուստատեսային հաղորդումները դիտում են մոտակա բազմաթիվ շրջաններ, իսկ շուտով նրանք կդիտեն նաև եղբայրական ռեսպուբլիկաներից և մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայից տրվող հաղորդումները։

Յուրաքանչյուր տարի սովետական ժողովուրդն իր մամուլի տոնը դիմավորում է ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերած վիթխարի նվաճումներով ու նորություններով։ Թերթերն ու ամսագրերը հենց այն օրգաններն են, որոնք առաջինն են նկատում և մասսաների սեփականությունը դարձնում այդ նվաճումները, պրոպագանդում են առաջավոր փորձը, ջերմորեն ու կրքոտությամբ պաշտպանում նորը, առաջավորը։

Ռադիոյով և մամուլի էջերից է ընթերցողն առաջին անգամ իմացել սովետական մարդկանց սխրագործությունների մասին, ծանոթացել հերոս-տիեզերագնացներ՝ Յու. Գագարինի, Գ. Տիտովի, Ա. Նիկոլաևի, Պ. Պոպովիչի հետ, մամուլի էջերից հնչեցին Սոցիալիստական աշխատանքի հերոս Նադեժդա



Զագլադայի խոսքը և մեր երկրի բազմաթիվ ուրիշ լավագույն զավակների անկեղծ մտքերը։ Իսկ քանի՜-քանի՜ աշխատավորներ հանդես են գալիս մամուլի էջերում և ռադիոյով, խոսում իրենց եղբայրների ու քույրերի հետ, խորհրդակցում ապագա անելիքների շուրջը, պատմում իրենց փորձի մասին։

Մեր մամուլի մասսայականության մասին է խոսում հենց թեկուզ այն փաստը, որ խմբագրություններն ամեն օր հազարավոր նամակներ են ստանում ժողովրդի տարբեր խավերի ներկայացուցիչներից, որոնք գրում են իրենց ուրախությունների ու հոգսերի, հաջողությունների և անհաջողությունների, լավի և վատի մասին։ Նրանք լավ գիտեն, որ սովետական մամուլը միշտ պաշտպանել ու պաշտպանում է աշխատավորների շահերը, նրանց իրավունքները։ Թե որքան մեծ է աշխատավորների նամակների հոսանքը, կարելի է տեսնել մեր ռեսպուբլիկական թերթերի օրինակով։

1961 թվականին մեր ռեսպուբլիկական թերթերի խմբագրություններն ստացել են 36.700, 1962 թվականին՝ 50.000 նամակ, որոնց գրեթե կեսը հրապարակվել է թերթերում, իսկ կեսն էլ ընթացք է ստացել համապատասխան կազմակերպությունների միջո-

ցով։ Մամուլում հասարակական հիմունքների զարգացման վերաբերյալ պարտիայի Կենտկոմի որոշումից հետո, աշխատավորներն ավելի ակտիվ մասնակցություն են ցույց տալիս թերթերի աշխատանքներին։ Խմբագրություններին կից ստեղծված են հասարակական հիմունքներով աշխատող բազմաթիվ բաժիններ, որոնք լայն գործունեություն են ծավալել ժողովրդական տնտեսության այս կամ այն բնագավառը ավելի մոտիկից լուսաբանելու, եղած թերությունները հայտնաբերելու և սուր քննադատության կրակի տակ պահելու ուղղությամբ։ Վերջին շրջանում մեր թերթերի էջերում ավելի հաճախակի են երևում նաև աշխատավորների ռեյդերը, որոնցում բարձրացվում են լուրջ, կենսական հարցեր։

Առանց աշխատավորական լայն մասսաների ակտիվ մասնակցության, հնարավոր չէ հետաքրքիր թերթ կամ ամսագիր հրատարակել։ Լենինը սովորեցնում էր, որ տպագիր օրգանը կենդանի և կենսական կլինի միայն այն ժամանակ, երբ նրա աշխատանքներում ներգրավվեն հարյուրավոր և հազարավոր ոչ-գրականագետներ։ Հենց նրանք՝ այդ հազարավոր բանգյուղթղթակիցներն էլ պետք է հանդիսանան մամուլի աչքը տեղերում, օպե-



րատիվ նյութեր մատակարարեն խմբագրություններին։ Դեռ 1897 թվականին Լենինը գրում էր, որ հարկավոր են թղթակիցներ բոլոր ֆաբրիկաներից և գործարաններից, որոնք տեղեկություններ պետք է տան բոլոր իրադարձությունների մասին։

Մամուլի առջև ներկայումս լուրջ խնդիրներ են դրված։ Նա մեծ դեր ունի կատարելու պարտիայի XXII համագումարի որոշումների կենսագործման համար աշխատավորների ուժերը մոբիլիզացնելու, ինչպես նաև գաղափարական աշխատանքի մակարդակը բարձրացնելու, մարքսիստական-լենինյան տեսության խորթ տենդենցների և ուղղությունների դեմ պայքարելու գործում։

Գաղափարական աշխատանքում մամուլի դերն ավելի է մեծանում արվեստի ու գրականության ներկայացուցիչների հետ պարտիայի և կառավարության ղեկավարների հանդիպումից և ընկ. Ն. Ս. Խրուշչովի ելույթից հետո։ Թերթերն ու ամսագրերը, ռադիոն ու հեռուստատեսությունը հետևողականորեն պետք է պաշտպանեն սոցիալիստական ռեալիզմի սկզբունքները, արվեստի և գրականության ժողովրդայնությունն ու պարտիականությունը, այդ դիրքերից ստեղծված լավագույն ստեղծագործությունները, և սլաքի սուր

*ծայրն ուղղեն ֆորմալիստական արվեստի դրսևորումների դեմ։*

*«Ինչպես բանակը չի կարող կռվել առանց զենքի,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— այնպես էլ պարտիան չի կարող իր գաղափարական աշխատանքը կատարել առանց այնպիսի սուր և մարտական զենքի, ինչպիսին մամուլն է»։*

*Սովետական մամուլի այս տոնական օրը մենք մի անգամ ևս կարող ենք արտահայտել մեր հպարտությունը այն բանի համար, որ մեր մամուլը և ռադիոն ամբողջ աշխարհին են տանում մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարների լույսը, աշխատավորների խոհերն ու շահերը արտահայտող կոմունիստական պարտիայի մեծ ճշմարտությունը, հանդես են գալիս որպես խաղաղ գոյակցության լենինյան գաղափարի, ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման, միջազգային կոմունիստական շարժման միասնության, սոցիալիստական երկրների համախմբման, բոլոր ժողովուրդների հետ եղբայրական համագործակցության զարգացման սկզբունքի պաշտպան և ջատագով։*

*Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

*ՀԿԴ Կենտկոմի գաղափարական բաժնի մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության սեկտորի վարիչ*



# ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

1945 թվականի ապրիլի 4-ին սովետական զորքերը Հունգարիայի տերիտորիան ամբողջությամբ ազատագրեցին գերմանական զավթիչներից։

1946 թվականին Հունգարիան հռչակվեց ժողովրդական ռեսպուբլիկա։ Հունգարիայի սոցիալիստական բանվորական պարտիայի ղեկավարությամբ շատ կարճ ժամանակամիջոցում երկրում իրականացվեց սոցիալ-տնտեսական արմատական խոշոր վերափոխումներ՝ հողային ռեֆորմ, խոշոր արդյունաբերության, բանկերի, տրանսպորտի, խոշոր առևտրական ձեռնարկությունների ազգայնացում, պետական ապարատի դեմոկրատացում։ Լիկվիդացվեցին կալվածատերերի և կապիտալիստների դասակարգերը։

Ժողովրդական իշխանության տարիներին եղբայրական սոցիալիստական երկրների և հատկապես Սովետական Միության մշտական օգնության շնոր–

հիվ հունգար ժողովուրդը վիթխարի հաջողությունների հասավ: Ահա թվեր և փաստեր այդ մասին:

Երկրի ազգային եկամտի 96 տոկոսից ավելին տալիս է սոցիալիստական սեկտորը. արդյունաբերական արտադրանքի 98 տոկոսը բաց են թողնում սոցիալիստական ձեռնարկությունները: Վարելահողերի տարածության 96 տոկոսը մշակվում է արտադրական կոոպերատիվների և պետական տնտեսությունների կողմից:

Երկրում անցկացված հողային ռեֆորմի հետևանքով գյուղի աշխատավորությունն ստացավ միլիոնավոր հեկտար հող: Գյուղատնտեսությունն սկսեց զարգանալ սոցիալիզմի սկզբունքով: Վերջին տարիներին արտադրական կոոպերատիվներում հաշվվում էին մոտ 1,1 միլիոն տնտեսություններ:

1963 թվականի պլանի համաձայն Հունգարիայում արդյունաբերական արտադրանքի աճը, 1962 թվականի համեմատությամբ, ավելացավ 8 տոկոսով, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 12—14 տոկոսով:

Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկան արդյունաբերության զարգացման տեմպի տեսակետից ոչ միայն գերազանցեց բուրժուա-կալվածատիրական Հունգարիայի նախապատերազմյան մակարդակը, այլև անցավ Եվրոպայի մի շարք զարգացած կապիտալիստական երկրներից:



Ստեղծվեցին այնպիսի նոր արդյունաբերական ճյուղեր, ինչպիսիք են՝ գործիքաշինության, քիմիական, մեքենաշինության և դազգահաշինության ճյուղերը: Կարգավորված է շինարարության և լեռնաարդյունահանման սարքավորումների արտադրությունը:

Հունգարիայի ամբողջ արդյունաբերական արտադրանքի 27 տոկոսը այժմ տալիս է երկրի մեքենաշինությունը: 1963 թվականին, հնգամյակի վերջին տարում մեքենաշինության արտադրանքի մակարդակը կաճի 65 տոկոսով:

Ռեսպուբլիկայում վերջին չորս տարիների ընթացքում քիմիական արդյունաբերությունն աճեց 20 տոկոսով:

Եթե կապիտալիստական Հունգարիայում մեկ տարում արտադրվում էր 1,4 միլիարդ կիլովատ էլեկտրաէներգիա, ապա այսօր ժողովրդական ռեսպուբլիկան արտադրում է մոտ 6 անգամից ավելի էլեկտրաէներգիա:

1965 թվականին Հունգարիան Սովետական Միությունից պետք է ստանա այնքան էլեկտրաէներգիա, որքան այժմ արտադրում է երկրում գործող ամենախոշոր Տիսապալկոնի էլեկտրակայանը:

Հունգարիան «Բարեկամության» նավթամուղով Սովետական Միությունից ստանում է մոտ 1,5 միլիարդ տոննա նավթ, որով տնտեսվում է ավելի քան երկու միլիարդ ֆորինտ։

Լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին գյուղատնտեսության մեջ։ Զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացել է անասունների գլխաքանակը, աճել է գյուղատնտեսության արտադրանքը։ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում։

Երեք տարիների ընթացքում՝ 1959—1961 թթ. գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին մակարդակը 8,5 տոկոսով գերազանցեց նախորդ երեք տարիների միջին մակարդակը։

1956 թվականի համեմատությամբ Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի բանվորների և ծառայողների ռեալ եկամուտը աճեց 34 տոկոսով, իսկ գյուղացիությանը՝ 21 տոկոսով։

Սոցիալիստական աշխատանքի բրիգադի կոչման արժանանալու համար մասնակցում են ավելի քան 31 հազար բրիգադ, որից արդեն մոտ 9 հազարը արժանացել է այդ պատվավոր կոչմանը։





Մինչև Հունգարիայի ազատագրումը կյանքի միջին տևողությունը կազմում էր 54 տարի, իսկ 1961 թվականին այն կազմեց 68 տարի։

1948 թվականին Հունգարիայում ութամյա դպրոցներում սովորել են 34 հազար, իսկ 1962 թվականին՝ 140 հազար աշակերտներ։ Ռեսպուբլիկայի բուհերում 1959—1960 ուսումնական տարում սովորում էին 38 հազար ուսանողներ, 1938 թվականի 11.700 ուսանողի դիմաց։

Հունգարիայում այժմ գործում են հազարից ավելի կուլտուրայի համալսարաններ, որտեղ հաճախում են 60 հազարից ավելի ունկնդիրներ։

Մինչ Հունգարիայի ազատագրումը գրքերի հրատարակման տպաքանակը հասնում էր 17 միլիոնի, իսկ այժմ այն հասնում է 55 միլիոնի։

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству промышленностью и строительством

Отдел идеологической работы бюро ЦК КП Армении по руководству сельскохозяйственным производством

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 7

1963


ՎՖ 09937 Պատվեր 271 Տիրաժ 8419

Հանձնված է արտադրության 27/III 1963 թ.
Ստորագրված է տպագրության 2/IV 1963 թ.

ՀՍՍՀ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.։